Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78։

# ԹԵԶԻՍՆԵՐ

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ ՈՒԿՐԱԻՆԱՅԻ ՎԵՐԱՄԻԱՎՈՐՄԱՆ 300-ԱՄՅԱԿԻ ՄԱՍԻՆ (1654-1954)

Հավանություն են ստացել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի կողմից

*Երեք հարյուր տարի առաջ, 1654 թվականի հունվարին, Պերեյասլավլի Ռադայում ուկրաինական ժողովրդի հուժկու կամքով հռչակվեց Ուկրաինայի վերամիավորումը Ռուսաստանի հետ։ Պատմական այդ ակտով ավարտվեց ազատասեր ուկրաինական ժողովրդի երկարատև պայքարը օտարերկրյա ստրկացնողների դեմ, միասնական Ռուսական պետության մեջ ռուս ժողովրդի հետ միավորվելու համար։ Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակը, որպես պատմական աչքի ընկնող իրադարձություն, հանդիսանում է ոչ միայն ուկրաինական և ռուս ժողովուրդների, այլև Սովետական Միության բոլոր ժողովուրդների մեծ տոնը։*





Վերամիավորումը հսկայական նշանակություն ունեցավ երկու մեծ ժողովուրդների հետագա պատմական զարգացման համար, ժողովուրդներ, որոնք «այնքան մոտ են և՛ լեզվով, և՛ բնակավայրով, և՛ բնավորությամբ, և՛ պատմությամբ» (Լենին)։

Իր բախտը առհավետ կապելով եղբայրական ռուս ժողովրդի հետ, ուկրաինական ժողովուրդը իրեն փրկեց օտարերկրյա ստրկացումից և ապահովեց իր ազգային զարգացման հնարավորությունը։ Դրա հետ մեկտեղ Ուկրաինայի վերամիավորումը Ռուսաստանի հետ շատ բանով նպաստեց Ռուսական պետության ամրապնդմանը և նրա միջազգային հեղինակության բարձրացմանը։ Ընդհանուր թշնամիների՝ ցարիզմի, ճորտատերերի ու կապիտալիստների, ինչպես նաև օտարերկրյա զավթիչների դեմ մղած համատեղ պայքարում աճեց ու ամրապնդվեց Ռուսաստանի և Ուկրաինայի աշխատավորների բարեկամությունը։ Իմպերիալիզմի դարաշրջանում այդ պայքարը գլխավորեց աշխար-



հում ամենառևոլյուցիոն՝ ռուսական բանվոր դասակարգը իր մարտական ավանգարդ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։ Ռուսական բանվոր դասակարգը Ռուսաստանի ժողովուրդներին համաշխարհային-պատմական հաղթանակի հասցրեց ինքնակալության, իսկ հետո նաև կալվածատերերի ու կապիտալիստների դեմ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան ընդմիշտ վերջ դրեց նախկին ցարական Ռուսաստանի ժողովուրդների սոցիալական և ազգային ճնշմանը, պայմաններ ստեղծեց սոցիալիստական ազգերի ձևավորման համար և դրեց կոմունիստական հասարակության կառուցման գործում նրանց սերտ համագործակցության հիմքերը։

Ուկրաինական, ռուս և մեր երկրի մյուս ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրական դաշինքը ամրապնդվեցին ու կոփվեցին քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի դաժան տարիներին, սոցիալիստական շինարարության պրոցե-

սում, գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ Հայրենական Մեծ պատերազմի պատմական ճակատամարտերում։ ՍՍՌՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը Սովետական սոցիալիստական բազմազգ պետության կարևորագույն հիմքերից մեկն է և եղբայրական սովետական ռեսպուբլիկաների բոլոր հաջողությունների գլխավոր պայմանը։

ՍՍՌՄ ազատ և իրավահավասար ժողովուրդների անխախտ բարեկամության ոգեշնչողը հանդիսանում է Կոմունիստական պարտիան։ Գլխավորելով Սովետական Միության ժողովուրդների պայքարը հանուն կոմունիզմի հաղթանակի, Կոմունիստական պարտիան ամրապնդում է բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքը՝ սովետական հասարակության անսասան հիմքը։ Պարտիան անդուլ կերպով հոգ է տանում Սովետական Միության մեջ մտնող բոլոր ժողովուրդների զարգացման մասին, անհաշտ պայքար է մղում բուրժուական նացիոնալիզմի դրսևորումների դեմ, սովետական մարդկանց դաստիարա-



կում է ժողովուրդների բարեկամության, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։

ՍՍՌՄ ժողովուրդների ամբողջ պատմական փորձը ակնառու կերպով վկայում է ռուս մեծ ժողովրդի հետ նրանց բարեկամության հսկայական նշանակության, մեր երկրի բոլոր ժողովուրդների աշխատավորների եղբայրական դաշինքի ու սերտ համագործակցության անհաղթահարելի ուժի մասին, ժողովուրդներ, որոնք Կոմունիստական պարտիայի առաջնորդությամբ կառուցել են սոցիալիզմ և այժմ վստահորեն առաջ են ընթանում դեպի կոմունիզմի հաղթանակը։

I

1. Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորումը 1654 թ. հանդիսացավ սլավոնական երկու եղբայրական մեծ ժողովուրդների՝ ռուս և ուկրաինական ժողովուրդների ամբողջ նախորդ պատմության օրինաչափ արդյունքը։ Այն պայմանավորված էր Ռուսաստանի հետ Ուկրաինայի

տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կապերի բազմադարյան զարգացումով և համապատասխանում էր երկու ժողովուրդների արմատական շահերին ու իղձերին։

Ռուս, ուկրաինական և բելոռուսական ժողովուրդները ծագում են միասնական արմատից՝ հին ռուսական ժողովրդից, որը ստեղծել էր հին ռուսական պետությունը՝ Կիևյան Ռուսիան։

Ռուսիայի սոցիալական-տնտեսական զարգացումը ֆեոդալիզմի ժամանակաշրջանում, թաթարա-մոնղոլական արշավանքի ծանր ժամանակներում հանգեցրեց հին ռուսական ժողովրդի առանձին մասերի մեկուսացմանը։ Հին ռուսական միասնական ժողովրդից աստիճանաբար կազմվեցին եղբայրական երեք ժողովուրդներ՝ ռուս, ուկրաինական և բելոռուսական ժողովուրդները՝ լեզվի, կուլտուրայի ու կենցաղի իրենց հատուկ առանձնահատկություններով։ Չնայած պատմական բոլոր ձախորդություններին ու մեծ փորձություններին, ռուս, ուկրաինական և բելոռուս ժողովուրդները պահպանեցին և դարեր ի վեր կրեցին ծագ-



ման միասնության, լեզվի ու կուլտուրայի մոտիկության գիտակցությունը, իրենց բախտի ընդհանրության գիտակցությունը։

2. Հին ռուսական երկրամասերի թուլացման հետևանքով, որը գգալի չափով թաթարա-մոնղոլական խաների նվաճումների հետևանքը հանդիսացավ, ուկրաինական հողերը, որոնք կտրված էին Հյուսիս-Արևելյան Ռուսիայից, մասնատվեցին ու դարձան լիտվական, լեհական ու հունգարական ֆեոդալների, սուլթանական Թյուրքիայի ու նրա վասալ՝ Ղրիմի խանության ավարը։

Ուկրաինայի մեծ մասը 16-րդ դարում զավթված էր պանական Լեհաստանի կողմից։ Դրան նպաստում էր ուկրաինական ֆեոդալ-ճորտատերերի դավաճանական քաղաքականությունը, որոնք լեհական պաների հետ դաշնակցած ձգտում էին ճնշել ժողովրդական մասսաների հակաֆեոդալական պայքարը, ամրապնդել և ընդլայնել իրենց դասակարգային ֆեոդալական-ճորտատիրական արտոնու-

թյունները, ուժեղացնել աշխատավորների շահագործումը։

Զավթելով ուկրաինական հողերը, լեհական ֆեոդալները (մագնատներն ու շլյախտան) Ուկրաինայում հաստատեցին ծանր, անմարդկային ճորտատիրական ճնշում։ Ճորտատիրական և ազգային ճնշման ամբողջ ծանրությունը ընկնում էր գյուղացիության, քաղաքային չքավորության և կազակային ստորին խավերի վրա։ Լեհական շլյախտան ուկրաինական գյուղացիներին մարդ չէր հաշվում, կոպիտ կերպով ոտնահարում էր նրանց մարդկային արժանապատվությունը։ Լեհական պաները Վատիկանի օգնությամբ կատաղի հարկադրանքի միջոցներով Ուկրաինայում սերմանում էին կաթոլիցիզմ, մտցնում էին եկեղեցական ունիա, վարում էին ուկրաինացիներին բռնի կերպով լեհացնելու քաղաքականություն, ծաղր ու ծանակի էին ենթարկում ուկրաիներեն լեզուն և ուկրաինական կուլտուրան, փորձելով հոգեպես ստրկացնել ուկրաինական ժողովրդին և ոչնչացնել նրա կապերը ռուս ժողովրդի հետ։



Ուկրաինայի ժողովրդական մասսաների ծանր դրությունը խորանում էր ֆեոդալական այն անարխիայով, որն իշխում էր լեհական պետության մեջ և դրսևորվում մագնատների ու շլյախտայի սանձարձակ կամայականության մեջ, որոնք սիստեմատիկ կողոպտման և ավերածության էին ենթարկում ուկրաինական հողերը։

Լեհական-շլյախտայական պետության ճնշումը և լեհական պաների անսահմանափակ կամայականությունը ուժեղագույն արգելակ դարձան Ուկրաինայի տնտեսական և կուլտուրական զարգացման համար։ Ուկրաինայի բնակչությունը տառապում էր նաև թյուրքերի և Ղրիմի թաթարների մշտական ավազակային հարձակումներից։

Ռուս ժողովուրդը թաթար-մոնղոլական և օտարերկրյա այլ ստրկացնողների դեմ մղած երկարատև և անձնվեր պայքարում հաղթահարեց ֆեոդալական մասնատվածությունը, պաշտպանեց իր ազգային անկախությունը և ստեղծեց հզոր կենտրոնացված պետություն Մոսկվա մայրաքա-

ղաքով։ Մոսկվան դարձավ ռուսական պետության ստեղծման հիմքն ու նախաձեռնողը, նրա քաղաքական, տընտեսական և կուլտուրական կենտրոնը։

Ռուսական կենտրոնացված պետությունը հսկայական դեր խաղաց ռուս, ուկրաինական, բելոռուս ժողովուրդների և մեր երկրի մյուս ժողովուրդների պատմական ճակատագրում։ Իր ծագման հենց սկզբից նա ձգողական կենտրոն և հենարան հանդիսացավ օտարերկրյա ստրկացնողների դեմ պայքարող եղբայրական ժողովուրդների համար։

3. Ուկրաինական ժողովուրդը, գտնըվելով ոչնչացման սպառնալիքի տակ, մշտապես պայքար է մղել օտարերկրյա ստրկացնողների ճնշման դեմ, հանուն իր ազատության և անկախության ու դրա հետ մեկտեղ հանուն Ռուսաստանի հետ միավորվելու։

Ֆեոդալական-ճորտատիրական և ազգային ճնշման դեմ, ինչպես նաև թյուրք-թաթարական հարձակումների դեմ ուկրաինական ժողովրդական մասսաների պայքարի ընթացքում



ստեղծվեց ռազմական ուժ ի դեմս կազակության. նրա կենտրոնը 16-րդ դարում դարձավ Զապորոժյան Սեչը, որը պրոգրեսիվ դեր խաղաց ուկրաինական ժողովրդի պատմության մեջ։ Այն ժամանակ, երբ կազակային-ավագային ունևոր վերնախավի մի մասը ժամանակ առ ժամանակ համաձայնության էր դիմում լեհական շըլյախտայի հետ, կազակային շարքային մասսաները գյուղացիության և քաղաքային չքավորության հետ միասին անհաշտ պայքար էին մղում ֆեոդալական-ճորտատիրական և ազգային ճնշման դեմ։ Լեհական շլյախտայի և տեղական շահագործողների տիրապետության դեմ գյուղացիական-կազակային ապստամբությունները մեկը մյուսի հետևից ցնցում էին Ուկրաինան և Բելոռուսիան։ 16-րդ դարի վերջում և 17-րդ դարի առաջին կեսում Ուկրաինայում առավել խոշոր ժողովրդական ապստամբությունները տեղի ունեցան Կոսինսկու, Նալիվայկոյի, Տարաս Ֆյոդորովիչի (Տրյասիլոյի) և ուրիշների ղեկավարությամբ։

Օտարերկրյա լծի և տեղական ճնշողների դեմ պայքարող ուկրաինական ու բելոռուսական աշխատավորների համար ոգեշնչող օրինակ հանդիսացավ Ռուսաստանում Իվան Բոլոտնիկովի ղեկավարությամբ տեղի ունեցած գյուղացիական ապստամբությունը (1606—1607), որին ակտիվ մասնակցություն ցուցաբերեցին նաև Ուկրաինայի գյուղացիները։

Լեհական և ուկրաինական ֆեոդալների սոցիալական ճնշման դեմ ժողովրդական մասսաների պայքարը սերտորեն միահյուսվում էր ազգային ճնշման դեմ մղվող ազատագրական պայքարի հետ։ Այդ պայքարի համար հզոր խթան հանդիսացավ ռուս ժողովրդի այն փառապանծ հաղթանակը, որ նա ձեռք բերեց Մինինի և Պոժարսկու ղեկավարությամբ 17-րդ դարի սկզբում լեհ-շվեդական ինտերվենտների դեմ մղված պատերազմում։

Պայքարելով ազգային ազատագրության համար, ուկրաինական ժողովուրդը ձգտում էր վերամիավորվել ռուս ժողովրդի հետ։ Չնայած բոլոր խոչընդոտներին, զարգանում և ամ-



րապնդվում էին Ուկրաինայի տնտեսական և կուլտուրական կապերը Ռուսաստանի հետ։ Դա նպաստեց երկու եղբայրական ժողովուրդների մերձեցմանը և բարերար ազդեցություն գործեց նրանց կուլտուրայի զարգացման վրա։

4. Շլյախտայական Լեհաստանի ճնշումից ազատագրվելը և սուլթանական Թյուրքիայի կողմից կլանվելու սպառնալիքի վերացումը ուկրաինական ժողովրդի համար պատմական անհրաժեշտություն էր, նրա ազգային գոյության արմատական հարցը։

Ուկրաինական ժողովրդի պատմության ամենափառավոր էջերից մեկը հանդիսացավ 1648—1654 թվականների ժողովրդա-ազատագրական պատերազմը։ Այդ պատերազմի գլխավոր և վճռական ուժը գյուղացիությունն էր, որը պայքարում էր լեհական և ուկրաինական ֆեոդալ-ճորտատերերի սոցիալական ճնշման ու օտարերկրյա ստրկացման դեմ։ Գյուղացիության հետ մեկտեղ ազատագրական պատերազմում հանդես էին գալիս կազակության ու քաղաքային բնակչության

*լայն մասսաները, ինչպես նաև կազակական ավագանին։*

*Մինչդեռ գյուղացիական-կազակական մասսաները հերոսական պայքար էին մղում սոցիալական և ազգային ամեն տեսակ ճնշման դեմ, ուկրաինական ֆեոդալական վերնախավը (կազակական ավագանին և մանր կալվածատերերը), մասնակցելով ազատագրական պատերազմին, ձգտում էր Ուկրաինայում պահպանել և ամրապնդել ֆեոդալական-ճորտատիրական հարաբերությունները։*

*1648—1654 թ. թ. ազատագրական պատերազմում ուկրաինական ժողովուրդը միաժամանակ պայքարում էր պանական Լեհաստանի լծից ազատագրվելու և միասնական ռուսական պետության մեջ եղբայրական ռուս ժողովրդի հետ վերամիավորվելու համար։*

*5. Ազատագրական պատերազմի ելած ուկրաինական ժողովրդի գլուխ էր կանգնած ականավոր պետական գործիչ և զորավար Բոգդան Խմելնիցկին։ Բոգդան Խմելնիցկու պատմական ծառայությունն այն է, որ նա, արտահայտելով ռուս ժողովրդի հետ սերտ դա-*



*շինքի վերաբերյալ ուկրաինական ժողովրդի դարավոր ձգտումներն ու հույսերը և գլխավորելով ուկրաինական պետականության կազմավորման պրոցեսը, ճիշտ էր ըմբռնում նրա խնդիրներն ու հեռանկարները, տեսնում էր, որ հնարավոր չէ փրկել ուկրաինական ժողովրդին առանց ռուս մեծ ժողովրդի հետ նրա միավորման, հաստատակամորեն ձգտում էր հասնել Ուկրաինայի վերամիավորմանը Ռուսաստանի հետ։*

*Ժողովրդա-ազատագրական պատերազմի ժամանակաշրջանում Բոգդան Խմելնիցկու ղեկավարությամբ Ուկրաինայում ստեղծվեցին խոշոր զինված ուժեր, որոնք մի շարք փայլուն հաղթանակներ տարան լեհական-շլյախտայական զորքերի դեմ և թշնամուց ազատագրեցին Ուկրաինայի մեծ մասը։ Ապստամբած ուկրաինական ժողովուրդը, Բոգդան Խմելնիցկու հետ մեկտեղ, իր միջավայրից առաջ քաշեց այնպիսի նշանավոր ռազմական ղեկավարների և ժողովրդական հերոսների, ինչպես Կրիվոնոսը, Նեչայը, Բոգունը և ուրիշներ։*

Ուկրաինական ժողովրդի հետ համատեղ լեհական ու լիտվական ֆեոդալների ճնշման դեմ, Ռուսաստանի հետ վերամիավորման օգտին պայքարում էր եղբայրական բելոռուս ժողովուրդը։

Ուկրաինական ժողովրդի ազատագրական պատերազմին ակտիվորեն մասնակցում էին Մոլդավիայի գյուղացիները։

Լեհական պաների դեմ ուկրաինական ժողովրդի պայքարը լայն արձագանք և համակրանք էր գտնում լեհ գյուղացիության մեջ, որը տառապում էր լեհական ֆեոդալների ճնշումից։ Ուկրաինական ժողովրդի զարգացող ազատագրական պայքարի ազդեցության տակ Լեհաստանի մի շարք շրջաններում տեղի էին ունենում գյուղացիական ելույթներ, որոնք թուլացնում էին լեհական ֆեոդալական պետությունը։

Ուկրաինական ժողովրդի ազատագրական պատերազմի մեծ թափին ու նրա աչքի ընկնող հաղթանակներին նպաստում էին Ռուսաստանի ժողովրդական լայն մասսաների և ռուսական պետության մշտական օգնությունն



ու աջակցությունը։ Ուկրաինական զորքերի շարքերում մարտնչում էին Դոնի շատ կազակներ, ռուս գյուղացիներ և քաղաքացիներ։

Պայքարելով շլյախտայական Լեհաստանի դեմ և ետ մղելով Ղրիմի թաթարների ավազակային ասպատակությունները, Ուկրաինան հենվում էր Ռուսաստանի տնտեսական, դիվանագիտական և ռազմական մշտական օգնության վրա։ Ռուսաստանից Ուկրաինա էին մեկնում հացի, զենքի, զինամթերքի, աղի, մետաղե առարկաների գումակներ։ Ռուս դիվանագետները պաշտպանում էին Ուկրաինայի շահերը օտարերկրյա պետությունների հետ բանակցություններ վարելիս և այլն։ Ռուսաստանի տերիտորիայում ապաստան էին գտնում ուկրաինական գյուղացիներն ու քաղաքացիները, որոնք լեհական-շլյախտայական զորքերի ու Ղրիմի խաների ասպատակությունների ժամանակ թողնում էին իրենց մշտական բնակավայրը։

Ցարական կառավարությունը, ելնելով պետության ամրապնդման շահերից, պաշտպանում էր Ռուսաստանի

հետ վերամիավորվելու ուկրաինական ժողովրդի ձգտումը։ Հաշվի առնելով Ուկրաինայի ներկայացուցիչների բազմաթիվ խնդրանքները, ինչպես նաև նկատի ունենալով այն վտանգը, որ սպառնում էր արյունակից ուկրաինական ժողովրդի գոյությանը լեհական, լիտվական և թյուրքա-թաթարական զավթիչների կողմից, Մոսկվայի Աշխարհաժողովը 1653 թվականի հոկտեմբերի 1-ին (11) համաձայնություն տվեց Ռուսաստանի կազմում Ուկրաինայի ընդունմանը և Ուկրաինան ու Բելոռուսիան ազատագրելու համար շլյախտայական Լեհաստանի դեմ պատերազմ հայտարարելուն։ Աշխարհաժողովում, ինչպես վկայում են փաստաթղթերը, բացի բոյարներից, ազնվականությունից, հոգևորականությունից ու ցարական աստիճանավորներից, ներկա էին ռուսական քաղաքների, վաճառականության, գյուղացիության և ստրելեցների ներկայացուցիչները։

Աշխարհաժողովի որոշումը հանդիսացավ ամբողջ ռուս ժողովրդի կամքի ու ցանկության արտահայտությունը՝ եղբայրական ուկրաինական ժողովրդ-



ին օգնություն ցույց տալու օտարերկրյա ստրկացնողների դեմ նրա ազատագրական պայքարում։

6. Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորումը ի լուր ամբողջ ժողովրդի հռչակվեց 1654 թվականի հունվարի 8-ին (18) Պերեյասլավի (այժմ Կիևի մարզի Պերեյասլավ-Խմելնիցկի) Ռադայում, որին մասնակցում էին լեհական-շլյախտայական լծից ազատագրված ուկրաինական բոլոր հողերի բնակչության սոցիալական տարբեր խավերի ներկայացուցիչները։ Ռադային ներկա էին նաև ռուսական կառավարության դեսպանները։ Բոգդան Խմելնիցկին Ռադայի մասնակիցներին դիմեց ճառով, որի մեջ նա հիշեցրեց ուկրաինական ժողովրդի պայքարի ու փորձությունների ծանր ուղու մասին, ժողովուրդ, որը կրում էր շլյախտայական Լեհաստանի ճնշումը, սուլթանական Թյուրքիայի և Ղրիմի խաների ավազակայինասպատակությունները։ Խմելնիցկին Ռադային կոչ արեց որոշում ընդունել Ռուսաստանի հետ վերամիավորվելու մասին։ Ռադայի մասնակիցները միահամուռ ար-

տահայտվեցին Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման օգտին, «որպեսզի լինեն հավերժ միասին» («Ուկրաինայի վերամիավորումը Ռուսաստանի հետ», փաստաթղթեր և նյութեր, հատ. III, 1953 թ., էջ 461)։

Ուկրաինական ժողովուրդը խանդավառությամբ ընդունեց Պերեյասլավի Ռադայի որոշումը Ռուսաստանի հետ վերամիավորվելու մասին։ Այդ իրադարձությունների ականատես տարեգիրը (Ռոման Ռակուշկա-Ռոմանովսկի), խոսելով վերամիավորման ակտի մասին, հաղորդել էր, որ «ամբողջ Ուկրաինայում ամբողջ ժողովուրդը հաճությամբ կատարեց այն»։

Պերեյասլավի Ռադայի որոշումը հանդիսացավ Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման համար մղված համաժողովրդական պայքարի ավարտումը, ուկրաինական ժողովրդի դարավոր ձգտումների ու հույսերի արտահայտությունը և շրջադարձային էտապ նշանավորեց նրա կյանքում։

Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորումը, չնայած այն ժամանակ Ռուսաստանի գլուխ էին կանգ-



նած ցարը և կալվածատերերը, հսկայական պրոգրեսիվ նշանակություն ունեցավ ուկրաինական և ռուս ժողովուրդների քաղաքական, տնտեսական ու կուլտուրական հետագա զարգացման համար։

Ուկրաինական ժողովրդի բախտի համար Պերեյասլավի Ռադայի որոշումների պատմական նշանակությունը ամենից առաջ այն էր, որ միասնական Ռուսական պետության շրջանակներում միանալով Ռուսաստանին, Ուկրաինան փրկվեց շլյախտայական Լեհաստանի ստրկացումից և սուլթանական Թյուրքիայի կողմից կլանվելուց։

Վերամիավորման ակտով ուկրաինական ժողովուրդը վավերացրեց պատմականորեն ստեղծված սերտ և անխզելի կապը ռուս ժողովրդի հետ, հանձինս որի նա ձեռք բերեց մի մեծ դաշնակից, հավատարիմ բարեկամ ու պաշտպան իր սոցիալական և ազգային ազատագրության համար մղվող պայքարում։

Ռուսական կենտրոնացված ուժեղ պետության հետ վերամիավորվելը նը-

պաստեց Ուկրաինայի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացմանը։ XVII դարի երկրորդ կեսին Ուկրաինայի էկոնոմիկան դարձավ կազմավորված համառուսաստանյան շուկայի անկապտելի մասը։ Վերամիավորումը նպաստեց նաև Ռուսաստանի արտադրողական ուժերի աճին և երկու եղբայրական ժողովուրդների կուլտուրական փոխադարձ հարստացմանը։

Ռուսաստանի կազմի մեջ Ուկրաինայի մտնելը նաև հսկայական միջազգային նշանակություն ուներ։ Այն հարված հասցրեց սուլթանական Թյուրքիայի և շլյախտայական Լեհաստանի ագրեսիվ ձգտումներին։

II

7. Ռուսաստանի և Ուկրաինայի տնտեսական ռեսուրսների միավորումը բազմապատկեց ռուս և ուկրաինական ժողովուրդների ուժերը օտարերկրյա զավթիչների դեմ նրանց համատեղ պայքարում։

1709 թվականին ռուսական բանակը, որի կազմի մեջ մտնում էին ուկրաինական զորամասեր, Պոլտա-



վայի մոտ ջախջախեց շվեդական զավթիչներին։ Ուկրաինական ժողովուրդը միահամուռ հանդես եկավ ստոր դավաճան, եզվիտական վիժվածք գետման Մազեպայի դեմ, որը փորձում էր շվեդական և լեհական զավթիչների օգնությամբ Ուկրաինան անջատել Ռուսաստանից ու վերականգնել օտարերկրյա ատելի լուծը։

18-րդ դարի երկրորդ կեսում Ռուսաստանը խոշոր հաղթանակներ ձեռք բերեց սուլթանական Թյուրքիայի դեմ, որոնց մեջ ականավոր դեր խաղաց ռուս մեծ զորավար Ա. Վ. Սուվորովը։ Այդ հաղթանակների շնորհիվ Թյուրքիայի տիրապետությունից ազատագրվեցին Ղրիմը և հարավ-ուկրաինական հողերը, մի բան, որ հսկայական դրական դեր խաղաց ամբողջ երկրի արտադրողական ուժերի զարգացման գործում, որը ստացավ, առաջներում իր համար անմատչելի, ելք դեպի ծովը։ Սև ծովի ափին աճեցին Ուկրաինայի այնպիսի խոշորագույն առևտրական ու կուլտուրական կենտրոններ, ինչպիսիք են Խերսոնը, Նիկոլաևը, Օդեսան և այլն։

18-րդ դարի վերջերին Ռուսաստանի հետ վերամիավորվեցին աջափնյա ուկրաինական հողերը, որոնք դեռ մինչ այդ գտնվում էին պանական Լեհաստանի լծի տակ (Կիևշչինան, Վոլինը, Պոդոլյեն)։

1812 թվականի Հայրենական պատերազմում մեր երկրի ժողովուրդները, այդ թվում ուկրաինական ժողովուրդը, ռուս ժողովրդի գլխավորությամբ, ջախջախեց Նապոլեոնյան բանակի թշնամական հարձակումը։

8. Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորումը ամրապնդեց ուկրաինական և ռուս ժողովուրդների միասնությունը ռուս և ուկրաինական ճորտատերերի սոցիալական ճնշման դեմ նրանց համատեղ պայքարում։ 17—18-րդ դարերում Ռուսաստանում Ստեպան Ռազինի և Եմելյան Պուգաչովի ղեկավարությամբ տեղի ունեցած հակաֆեոդալական ապստամբությունները, որոնց ակտիվ մասնակցություն ցուցաբերեցին շատ ազգությունների գյուղացիներ, լայն արձագանք գտան ուկրաինական ժողովրդի ճնշված մասսաների մեջ։ Ֆեոդալա-



կան-ճորտատիրական և ազգային ճնշման դեմ մղված պայքարում ուկրաինական գյուղացիությունը առաջ քաշեց ժողովրդական այնպիսի առաջնորդների, ինչպիսիք էին Զալիզնյակը, Դովբուշը, Կարմելյուկը և ուրիշներ։

Չնայած իրենց տարերայնությանը, անկազմակերպվածությանն ու մասնատվածությանը, հակաֆեոդալական շարժումները, որոնք ընդգրկեցին Ռուսաստանի տարբեր ազգությունների գյուղացիական մասսաներին, խարխլեցին ճորտատիրական կարգը և այդ մասսաներին համախմբեցին ընդհանուր թշնամիների դեմ պայքարելու համար։

Ֆեոդալական-ճորտատիրական ճնշման և օտարերկրյա զավթիչների դեմ մղված հերոսական պայքարի ընթացքում զարգանում և ամրապնդվում էր Ռուսաստանի և Ուկրաինայի աշխատավորների մարտական համագործակցությունը։

9. Ռուս, ուկրաինական և Ռուսաստանի մյուս ժողովուրդների ոխերիմ թշնամին հանդիսանում էր ցարական

ինքնակալությունը։ Հենվելով տեղական կալվածատերերի և բուրժուազիայի ռեակցիոն վերնախավի վրա, ցարիզմը վարում էր ոչ-ռուս ժողովուրդների ազգային-գաղութային դաժան ճնշման քաղաքականություն։ Ուկրաինայում ցարիզմը լիկվիդացրեց տեղական ինքնավարությունը, դաժանորեն ճնշում էր ազգային-ազատագրական շարժումը, խափանելով ուկրաինական պետականություն ստեղծելու ձգտումը, վարում էր ռուսիֆիկացման բռնի քաղաքականություն, ճնշում ուկրաիներեն լեզվի և ուկրաինական կուլտուրայի զարգացումը։

10. Ցարիզմի և ճորտատիրության դեմ Ռուսաստանում 19-րդ դարում ծավալված ռևոլյուցիոն ազատագրական պայքարում առաջատար դեր խաղաց ռուս մեծ ժողովուրդը։

Ցարիզմի դեմ ռևոլյուցիոներ-մարտնչողների առաջին սերունդը, որոնք շարունակեցին Ռադիշչևի ռևոլյուցիոն տրադիցիաները, դեկաբրիստներն էին, որոնք 1825 թվականին ապստամբություն կազմակերպեցին Պետերբուր-



գում և Ուկրաինայում (Չեռնիգովյան գնդի ապստամբությունը)։ Դեկաբրիստներից անմիջապես հետո ցարիզմի և ճորտատիրության դեմ պայքարի դուրս եկան ռուս մեծ ռևոլյուցիոն դեմոկրատներ Բելինսկին, Գերցենը, Չերնիշևսկին, Դոբրոլյուբովը։

Ազգային-գաղութային դաժան ճնշման ցարական ռեակցիոն քաղաքականությանը հակառակ, ռուս ժողովրդի լավագույն զավակները ճանաչում էին Ուկրաինայի ազգային անկախության իրավունքը և ուկրաինական ժողովրդի առաջավոր գործիչների հետ միասին պայքարում էին Ռուսաստանի ժողովուրդներին միմյանց դեմ դրդելու խայտառակ քաղաքականության դեմ, որը վարում էին ռուս և ուկրաինական կալվածատերերը և բուրժուազիան ու նրանց սպասարկուները՝ մեծապետական շովինիստները և ուկրաինական բուրժուական նացիոնալիստները։ Ռուսաստանի ռևոլյուցիոն գործիչները, միշտ էլ ճանաչելով ուկրաինական ժողովրդի ազգային ազատ զարգացման իրավունքը, այն կապում էին ցարիզմի տապալման

և ինչպես ռուս ժողովրդի, այնպես էլ ուկրաինական ու մեր երկրի մյուս ժողովուրդների ազատագրության հետ։

Ռուս ռևոլյուցիոն դեմոկրատների հետ սերտ միասնությամբ ցարիզմի և ճորտատիրության դեմ պայքար էր մղում ուկրաինական ժողովրդի մեծ զավակ, բանաստեղծ և ռևոլյուցիոն դեմոկրատ Տ. Գ. Շևչենկոն։ Ճնշողների նկատմամբ խոր ատելությամբ տոգորված իր ստեղծագործություններով նա հսկայական դեր խաղաց ուկրաինական ժողովրդի ազգային ու սոցիալական ինքնագիտակցության զարգացման մեջ։ Ուկրաինական ժողովրդի ազատագրության ուղին նա ամենից առաջ տեսնում էր ռուս ժողովրդի հետ բոլոր սլավոնական ժողովուրդների ռևոլյուցիոն միասնության մեջ։ Շևչենկոն ուկրաինական բուրժուական նացիոնալիզմի և լիբերալիզմի դեմ անհաշտ մարտնչող էր։

Ռուս և ուկրաինական ռևոլյուցիոներների հետ միասին ցարիզմի դեմ հանդես էին գալիս նաև լեհական ռևոլյուցիոներ-դեմոկրատները։ Լեհ ժողովրդի լավագույն ներկայացուցիչ-



ները միշտ էլ համակրում էին ուկրաինական ժողովրդի ազատագրական պայքարը։

11. Ռուսաստանում կապիտալիզմի զարգացումը պայմանավորեց նոր դասակարգի՝ պրոլետարիատի առաջացումը։ Ի դեմս ռուսական պրոլետարիատի, մեր երկրի բոլոր ազգությունների աշխատավորները պատմության մեջ առաջին անգամ ձեռք բերեցին հուսալի ղեկավար սոցիալական և ազգային ճնշումը տապալելու համար իրենց պայքարում։

Արդյունաբերության զարգացման հետ Ուկրաինայում արագ աճում էր բանվոր դասակարգը, որը կազմավորվում էր ինչպես ուկրաինական, այնպես էլ ռուսական բնակչությունից։ Ուկրաինայի բանվոր դասակարգը հանդիսանում էր Ռուսաստանի պրոլետարիատի բաղկացուցիչ մասը։ Ուկրաինայում բանվորական շարժումը զարգանում էր համառուսական բանվորական շարժման հետ անխզելի միասնությամբ։ Արդեն 70—80-ական թվականներին Ուկրաինայում, ինչպես նաև Ռուսաստանում, սկսեցին ստեղծ-

վել ռևոլյուցիոն բանվորական կազմակերպություններ, որոնք իրենց խնդիր էին դնում պայքարել ինքնակալության ու կապիտալիզմի դեմ։ Ուկրաինայի բանվոր դասակարգը ռուսական պրոլետարիատի ամենախոշոր և մարտական ջոկատներից մեկն էր։

19-րդ դարի վերջում—20-րդ դարի սկզբում համաշխարհային ռևոլյուցիոն շարժման կենտրոնը փոխադրվեց Ռուսաստան։ Ռուսաստանը հանդիսանում էր իմպերիալիզմի բոլոր հակասությունների հանգուցակետը. նա ռազմա-ֆեոդալական, գաղութային և կապիտալիստական ճնշման օջախն էր։ Ցարիզմի, կալվածատերերի և բուրժուազիայի կողմից աշխատավորների ճնշումը լրացվում էր արևմտաեվրոպական մոնոպոլիստական կապիտալի կողմից Ռուսաստանի իմպերիալիստական կողոպուտով։ Այդ նույն ժամանակ Ռուսաստանում գոյություն ուներ ռեալ ուժ, որը կարող էր ռևոլյուցիոն ճանապարհով լուծել բոլոր այդ հակասությունները. այդ ուժը Ռուսաստանի պրոլետարիատն էր։

Ռուսաստանում աճող բանվորական



շարժման խնդիրները հրամայաբար պահանջում էին ստեղծել ռևոլյուցիոն պրոլետարական պարտիա։ «Աշխատանքի ազատագրություն» խումբը, որը Գ. Վ. Պլեխանովի գլխավորությամբ Ռուսաստանում միավորեց մարքսիզմի առաջին ներկայացուցիչներին, 19-րդ դարի 80-ական թվականներին Ռուսաստանում դրեց ռևոլյուցիոն բանվորական շարժման թեորիական հիմքերը։ 19-րդ դարի 90-ական թվականներին Ռուսաստանի բանվոր դասակարգի գլուխ կանգնեց մեծ Լենինը։ 1895 թվականին Վ. Ի. Լենինը Պետերբուրգում կազմակերպեց «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը», որը հանդիսացավ Ռուսաստանում ռևոլյուցիոն պրոլետարական պարտիայի առաջին սաղմը։ Լենինյան «Պայքարի միությունը» հսկայական ազդեցություն գործեց ռևոլյուցիոն շարժման վրա ամբողջ երկրում։ Ուկրաինայում նույնպես այդպիսի «միություններ» ստեղծվեցին Եկատերինոսլավում, Կիևում և այլ քաղաքներում։ Լենինյան ուղղության սո-

ցիալ-դեմոկրատական կազմակերպությունները Ուկրաինայում, ինչպես նաև Ռուսաստանում, ղեկավարում էին գործադուլները, իրագործում անցում դեպի մասսայական ագիտացիան, սոցիալիզմը միացնելով բանվորական շարժման հետ։

12. 1903 թվականին, ՌՍԴԲՊ II համագումարում ստեղծվեց նոր տիպի մարքսիստական պարտիա Վ. Ի. Լենինի մշակած գաղափարական ու կազմակերպական սկզբունքներով։ Բանվորական շարժման մեջ սեպարատիստական և նացիոնալիստական տարրերի դեմ մղվող պայքարում Վ. Ի. Լենինը պաշտպանեց ինտերնացիոնալիզմի սկզբունքը մարքսիստական պարտիայի կառուցման գործում։ ՌՍԴԲՊ-ն իր շարքերում միավորեց Ռուսաստանի բոլոր ազգությունների ռևոլյուցիոն բանվորներին։ Հենց սկզբից նա հանդես եկավ որպես պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության իդեոլոգիայի դրոշակակիր։ ՌՍԴԲՊ երկրորդ համագումարում ընդունվեց ազգային հարցում լենինյան ծրագրային



պահանջը՝ ազգերի ինքնորոշման իրավունքի ճանաչումը։

Ռուս բանվորները կալվածատիրական-բուրժուական կարգի դեմ մղված պայքարում հանդես էին գալիս որպես նախամարտիկներ, նրանք ազգային ծայրամասերի պրոլետարիատի հետ միասին անձնվիրաբար պայքարում էին և բոլոր աշխատավորներին ոտքի էին հանում ու համախմբում պայքարելու սոցիալական և ազգային ազատագրության համար։

Ուկրաինայի աշխատավորները 1905—1907 թ. թ. առաջին բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի տարիներին հերոսական ռուսական պրոլետարիատի հետ միասին անձնվիրաբար պայքարում էին իրենց դասակարգային թշնամիների դեմ։ Այդ ժամանակաշրջանում Ուկրաինայում խոշոր ապստամբություններ տեղի ունեցան մի շարք քաղաքներում ու նահանգներում, ինչպես նաև տեղի ունեցան սևծովյան ծովայինների ապստամբությունները։ Այդ ապստամբությունների ընթացքում Մոսկվայի, Պետերբուրգի և Ռուսաստանի մյուս քա-

ղաքների օրինակով Ուկրաինայի արդյունաբերական կենտրոնների բանվորները ստեղծեցին բանվորական դեպուտատների Սովետներ, որոնք հանդիսացան Սովետական իշխանության նախատիպը։ Բանվորների ու գյուղացիների ռևոլյուցիոն պայքարը Ուկրաինայում աչքի ընկնող տեղ էր գրավում 1905—1907 թ. թ. ռևոլյուցիայի ընդհանուր ընթացքում։

Ստոլիպինյան ռեակցիայի, նոր ռևոլյուցիոն վերելքի ժամանակաշրջանում և առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Ուկրաինայի, ինչպես և ամբողջ Ռուսաստանի բանվորները է՛լ ավելի սերտորեն համախմբվեցին ՌՍԴԲՊ (բ) շուրջը ինքնակալության և բուրժուազիայի դեմ մղված պայքարում։

Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժման ազդեցությամբ ընդլայնվում էր ավստրո-հունգարական միապետության ճնշման տակ գտնված արևմտաուկրաինական երկրամասերի աշխատավորների պայքարը իրենց ազգային ազատագրության համար, ամբողջ ուկ-



րաինական ժողովրդի հետ վերամիավորվելու համար։

Մեծ Լենինը մարքսիզմի պատմության մեջ առաջին անգամ մշակեց ազգային հարցի վերաբերյալ պարտիայի թեորիական ծրագիրն ու քաղաքականությունը։ Նա ցույց տվեց, որ ազգային հարցը հանդիսանում է պրոլետարիատի դիկտատուրայի համար բանվոր դասակարգի ընդհանուր ռևոլյուցիոն պայքարի բաղկացուցիչ մասը։ Լենինը ժողովուրդների իրավահավասարության ու բարեկամության քաղաքականության ոգեշնչողն էր և ղեկավարում էր այդ քաղաքականության իրագործումը պրակտիկայում։ Ազգային հարցի վերաբերյալ լենինյան ծրագրային ցուցումները սոցիալիստական շինարարության փորձի ընդհանրացման հիման վրա հետագա ստեղծագործական զարգացում գտան Ի. Վ. Ստալինի աշխատություններում և պարտիայի որոշումներում։ Պաշտպանելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքը, պարտիան ամբողջ ուժով ընդգծում էր բոլոր ազգերի պրոլետարների գործողություն-

ների միասնության և ռուսական պրոլետարիատի շուրջը նրանց համախմբելու անհրաժեշտությունը։

«Վելիկոռուս և ուկրաինացի բանվորների միասնական գործունեությամբ,— գրել է Վ. Ի. Լենինը,— հնարավոր է ազատ Ուկրաինա, առանց այդպիսի միասնության նրա մասին խոսք անգամ չի կարող լինել...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 20, էջ 19)։

Ուկրաինական բուրժուական նացիոնալիստները, լինելով ինտերնացիոնալիզմի և ռուս ժողովրդի հետ ուկրաինական ժողովրդի եղբայրական դաշինքի ամենաոխերիմ թշնամիները, ձգտում էին աշխատավորներին թունավորել նացիոնալիզմի թույնով, թշնամանքի զգացմունք պատվաստել նրանց դեպի ռուս ժողովուրդը, նրանց շեղել ճնշողների դեմ ուղղված ընդհանուր դասակարգային պայքարից և դրանով իսկ գաղափարապես ենթարկել ուկրաինական բուրժուազիայի ու կալվածատերերի շահագիտական դասակարգային շահերին։ Մասսաներին խաբելու համար նացիոնալիստները պրոպագանդում էին ուկրաինական



ազգի անդասակարգային և անբուրժուական լինելու հակագիտական ռեակցիոն «թեորիան» և «միասնական հոսանքի» «թեորիան»։ Ընդ որում ուկրաինական բուրժուական նացիոնալիստները հանդես էին գալիս որպես ռուսական ցարիզմի ու բուրժուազիայի դաշնակիցներ և որպես օտարերկրյա իմպերիալիզմի գործակալներ։

Գլխավորելով ամբողջ Ռուսաստանի աշխատավորների ռևոլյուցիոն շարժումը, Կոմունիստական պարտիան վճռական պայքար էր մղում ինչպես ռուսական մեծապետական շովինիզմի, այնպես էլ ուկրաինական բուրժուական նացիոնալիզմի դեմ։

Կոմունիստական պարտիան ձգտում էր հասնել Ռուսաստանի ճնշված ազգությունների ազգային-ազատագրական շարժման միացմանը բանվորների պայքարին ընդդեմ բուրժուա-կալվածատիրական կարգի, հանուն պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման։

13. Ռևոլյուցիոն-ազատագրական պայքարի միասնությունը պայմանավորում էր ռուս և ուկրաինական ժո-

ժողովուրդների կուլտուրական կապերի ամրապնդումը։ Ռուսական պրոգրեսիվ կուլտուրան բարերար ազդեցություն էր գործում ամբողջ ուկրաինական կուլտուրայի (գրականության, թատրոնի, գեղանկարչության, երաժշտության) վրա։ Իր հերթին ուկրաինական առաջավոր կուլտուրան հարստացնում էր ռուս ժողովրդի կուլտուրան և արժանավայել ավանդ էր մուծում համաշխարհային կուլտուրայի զարգացման մեջ։

Առաջավոր հասարակական մտքի զարգացումը Ուկրաինայում, ինչպես և ամբողջ երկրում, XIX դարի վերջերից տեղի էր ունենում մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ազդեցության տակ։

Պատմական ասպարեզում աշխարհում ամենառևոլյուցիոն՝ ռուսական պրոլետարիատի ու նրա մարտական ավանգարդ Կոմունիստական պարտիայի երևալը վճռական նշանակություն ունեցավ ռուսական, ուկրաինական և Ռուսաստանի մյուս բոլոր ժողովուրդների հետագա զարգացման համար։



## III

14. Ռուսաստանի բանվոր դասակարգը աշխատավոր գյուղացիության հետ դաշնակցած, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, կատարեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, տապալեց իմպերիալիստական բուրժուազիայի ու կալվածատերերի իշխանությունը և հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա։

Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի շնորհիվ մեր երկրում ստեղծվեց բանվորների ու գյուղացիների՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը, որը հռչակեց խաղաղության և ժողովուրդների բարեկամության քաղաքականություն, Ռուսաստանի բոլոր ժողովուրդների հավասարություն ու սուվերենություն, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո մեր Հայրենիքի ժողովուրդներին համախմբեց միասնական եղբայրական ընտանիքում։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը Ռուսաստանի կենտրոնում հզոր խթան

հանդիսացավ ամբողջ Ռուսաստանում պրոլետարական ռևոլյուցիայի զարգացման համար։

Ուկրաինական ժողովուրդը, որը ռուս մեծ ժողովրդի հետ միասին անցել է համատեղ ռևոլյուցիոն պայքարի երկար ուղի, ռուս եղբայրներից անմիջապես հետո առաջինը թևակոխեց Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի ուղին, դնելով իր պատմության նոր և փառավոր դարաշրջանի սկիզբը։

1917 թվականի դեկտեմբերի 25-ին Սովետների Համաուկրաինական Առաջին համագումարը Ուկրաինան հռչակեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա։ Միահամուռ արտահայտելով Ուկրաինայի բանվորների ու գյուղացիների կամքը, համագումարը հանդիսավոր կերպով հայտարարեց Սովետական Ռուսաստանի հետ Սովետական Ուկրաինայի սերտ դաշինքի անհրաժեշտության մասին։

Ուկրաինայի բանվոր դասակարգը բուրժուազիայի ու կալվածատերերի իշխանությունը տապալելու համար իր անձնվեր պայքարով, նացիոնալիստա-



կան կոնտրռևոլյուցիայի դեմ իր պայքարով արժանի ավանդ մուծեց մեր երկրում պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակի գործում։

Ազատագրվելով կալվածատիրական-բուրժուական շահագործումից և ազգային ճնշումից, ուկրաինական ժողովուրդը դարձավ իր բախտի լիիշխան տերը։ Ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ նա հասավ իր դարավոր երազանքի իրականացմանը՝ իրոք ազատ, սովերեն ազգային պետության ստեղծմանը, որը աչքի ընկնող տեղ է գրավել սովետական ռեսպուբլիկաների ընտանիքում։

Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը Ուկրաինայում և Ուկրաինական Սովետական պետության ստեղծումը ձեռք բերվեցին ռևոլյուցիայի լենինյան թեորիայի ու ազգային-գաղութային հարցի վերաբերյալ Լենինի մշակած ուսմունքի հիման վրա և հանդիսացան միջազգային իմպերիալիզմի ու նրա բուրժուա-նացիոնալիստական գործակալության խոշոր պարտությունը։

15. Կոմունիստական պարտիայի դե-

կավարությամբ մեր երկրի ժողովուրդները արտաքին թշնամիների ու ներքին կոնտրռևոլյուցիայի դեմ մղված դաժան և արյունալի պայքարում պաշտպանեցին Հոկտեմբերի մեծ նվաճումները, իրենց ազատությունը և իրենց Հայրենիքի անկախությունը։

Ուկրաինական բուրժուական նացիոնալիստները՝ աշխատավորների այդ ամենաոխերիմ թշնամիները, քողարկվելով Ուկրաինայի «ինքնուրույնության» կեղծ լոզունգով, ձգտում էին վերացնել Սովետական իշխանությունը, վերականգնել կալվածատերերի ու կապիտալիստների ճնշումը, ուկրաինական աշխատավորներին գրգռել ռուս բանվորների ու գյուղացիների դեմ, եղբայրասպան պատերազմ հրահրել նրանց միջև։

Կոնտրռևոլյուցիոն նացիոնալիստական «կառավարությունները»— Կենտրոնական Ռադան, Դիրեկտորիան և մյուսները, որոնց գլխավորում էին օտարերկրյա իմպերիալիզմի այնպիսի վարձու գործակալներ, ինչպիսիք էին Գրուշևսկին, Վիննիչենկոն և Պետլյուրան, որոնք ձգտում էին կալ-



վածատերերին և կապիտալիստներին վերադարձնել իշխանությունը, ինչպես նաև ամրապնդել կուլակության տիրապետությունը, Ուկրաինան՝ իր ժողովրդի և բոլոր բնական հարստությունների հետ միասին աջ ու ձախ վաճառում էին արևմտաեվրոպական իմպերիալիստական գիշատիչներին։ 1918 թվականի փետրվարին կոնտրռևոլյուցիոն Ռադան Սովետական իշխանությունը խեղդելու համար Ուկրաինա կանչեց ավստրո-գերմանական օկուպանտներին։

Ուկրաինական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի կոչով պայքարի ելավ ընդդեմ ավստրո-գերմանական ինտերվենտների ու նրանց սպասարկուների՝ ուկրաինական բուրժուական նացիոնալիստների։

Ռուս ժողովրդի գլխավորությամբ մեր Հայրենիքի աշխատավորները ջախջախեցին և Սովետական երկրի սահմաններից դուրս շպրտեցին անգլո-ֆրանսիական ինտերվենտներին, որոնք 1918 թվականի վերջերին օկուպացրել էին Ուկրաինայի հարավային շրջանները ու Ղրիմը, դենիկինցինե-

րին, սպիտակ լեհերին, վրանգելյականներին, պետլյուրական-մախնոյական նացիոնալիստական բանդաներին և ԱՄՆ-ի ու Անտանտայի իմպերիալիստների մյուս վարձկաններին։

Ռուսաստանի մյուս ժողովուրդների հետ միասին ուկրաինական ժողովուրդը, հաղթահարելով հսկայական դժվարություններ, տնտեսական քայքայումն ու սովը, օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի տարիներին մեծագույն հերոսություն և արիություն ցուցաբերեց իր հարազատ Սովետական իշխանությունը պաշտպանելու գործում։ Ուկրաինական ժողովրդի և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների ազատության ու երջանկության համար։ Ուկրաինայում մարտնչում էին Սովետական Ռուսաստանի հազարավոր բանվորներ և գյուղացիներ։

Իրենց հերթին ուկրաինական ժողովրդի շատ զավակներ մարտնչում էին քաղաքացիական պատերազմի բազմաթիվ ռազմաճակատներում Ռուսաստանում, Բելոռուսիայում, Միջին Ասիայում, Անդրկովկասում և այլն։



Օտարերկրյա ինտերվենտների և ներքին կոնտրռևոլյուցիայի ջախջախման համար Ուկրաինական ժողովրդի ուժերը մոբիլիզացնելու գործում ականավոր դեր է պատկանում 1918 թվականի հուլիսին ստեղծված՝ Ուկրաինայի Կոմունիստական պարտիային, որը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի անխզելի մասն է։

Քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի կրակի ու փոթորկի մեջ ամրապնդվում և կոփվում էին ռուս, ուկրաինական ժողովուրդների և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների եղբայրական դաշինքն ու բարեկամությունը։ Միայն այդ դաշինքի շնորհիվ Ուկրաինական ժողովուրդը, ինչպես և ՍՍՌՄ բոլոր ժողովուրդները, պաշտպանեց իր ազատությունն ու անկախությունը։

16. Քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտումից հետո Սովետական երկիրը թևակոխեց խաղաղ սոցիալիստական շինարարության ժամանակաշրջանը։ Սոցիալիզմի կառուցման և երկրի պաշտպանության խըն-

ղիրները պահանջում էին սովետական ժողովուրդների առավել սերտ համագործակցություն տնտեսական, ռազմական և քաղաքական ասպարեզներում։ Հերթի դրվեց սովետական ռեսպուբլիկաները միասնական պետական միության մեջ միավորելու հարցը։ Սովետական Ուկրաինայի աշխատավորները հանդես եկան միասնական Միութենական պետություն ստեղծելու առաջին նախաձեռնողներից մեկը։

Կոմունիստական պարտիան գլխավորեց և ճիշտ ուղիով նպատակամղեց Սովետական երկրի բոլոր ժողովուրդների միավորիչ շարժումը։

1922 թվականի դեկտեմբերին Սովետների Առաջին Համամիութենական համագումարում կամավորության և իրավահավասարության հիման վրա սովետական ռեսպուբլիկաները միավորվեցին Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ՝ յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկայի համար պահպանելով ինքնուրույն պետության սուվերեն իրավունքները, որն ունի իշխանության իր բարձրագույն օրգանները, իր տե-



րիտորիան, իր կոնստիտուցիան, իր օրենսդրությունը։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ստեղծումը հանդիսացավ Սովետական իշխանության մեծագույն հաղթանակը, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության տրիումֆը։ Դա հաղթանակ էր ամեն գույնի բուրժուական նացիոնալիզմի դեմ, որը հանդես էր գալիս ժողովուրդների եղբայրական համագործակցության դեմ և հանդիսանում էր լուրջ խոչընդոտ սովետական ռեսպուբլիկաների պետական միավորման ճանապարհին։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կազմումը ապահովեց բոլոր անհրաժեշտ պայմանները ամբողջ սովետական երկրի և առանձին վերցրած յուրաքանչյուր սովետական ռեսպուբլիկայի՝ մարդկության պատմության մեջ չտեսնված տնտեսական, քաղաքական և կուլտուրական ծաղկման համար, նախկինում հետամնաց և ճնշված ժողովուրդներին առաջավոր սոցիալիստական ազգեր դարձնելու համար։

ՍՍՌ Միության կազմի մեջ Սովետական Ուկրաինայի մտնելը նրան հնարավորություն տվեց հաջողությամբ վերականգնելու ժողովրդական տնտեսությունը, զարգացնելու սոցիալիստական կուլտուրան և արագ քայլերով առաջ շարժվելու դեպի սոցիալիզմի կառուցումը։

IV

17. Կոմունիստական պարտիան, ղեկավարվելով մարքսիստական-լենինյան թեորիայով, մշակեց մեր երկրում սոցիալիզմի կառուցման ծրագիրը։ Իրագործելով այդ ծրագիրը, սովետական ժողովուրդը մարդկության պատմության մեջ առաջինը կառուցեց նոր հասարակարգ՝ սոցիալիզմ, ընդմիշտ լիկվիդացրեց շահագործող դասակարգերին, ոչնչացրեց մարդու կողմից մարդու շահագործումը։

Մեր Հայրենիքը, լիկվիդացնելով տնտեսական և կուլտուրական դարավոր հետամնացությունը, վիթխարի առաջընթաց թռիչք կատարեց, դարձավ հզոր պետություն՝ բարձր-զարգացած



ինդուստրիայով, սոցիալիստական գյուղատնտեսությամբ և աշխարհում ամենաառաջավոր սովետական կուլտուրայով։

Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ արմատական փոփոխություններ տեղի ունեցան ՍՍՌՄ էկոնոմիկայում, սովետական հասարակության դասակարգային կառուցվածքի մեջ, ինչպես նաև ազգային փոխհարաբերությունների բնագավառում։ Ազգամիջյան թշնամանքի մեջ հանցավոր և նրա կազմակերպիչ՝ շահագործող դասակարգերի ոչնչացումը, իշխանության գլուխ բանվոր դասակարգի գտնվելը, որը ամեն տեսակ ստրկացման թշնամին է և ինտերնացիոնալիզմի գաղափարների հավատարիմ կրողը, տնտեսական և հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում ժողովուրդների փոխադարձ օգնությունը, ՍՍՌՄ ժողովուրդների՝ ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի ծաղկումը — այս ամենը հանգեցրեց նրան, որ մեր երկրում ստեղծվեց ժողովուրդների եղբայրական համագործակցություն միասնական միութենա-

կան պետության սիստեմում, վերջնականապես հաստատվեց ռասաների և ազգերի իրավահավասարության սովետական իդեոլոգիան, ժողովուրդների բարեկամության ու եղբայրության իդեոլոգիան։

Սոցիալիզմի հաղթանակով ռուս, ուկրաինական ժողովուրդների և մեր երկրի մյուս ժողովուրդների դարավոր բարեկամությունը դարձավ հզոր, անհաղթահարելի ուժ, սովետական հասարակության զարգացման շարժիչ ուժերից մեկը։

Կոմունիստական պարտիան ջախջախեց դավաճաններին ու կապիտուլյանտներին՝ տրոցկիստներին, բուխարինականներին, բուրժուական նացիոնալիստներին և սովետական ժողովրդի մյուս թշնամիներին, որոնք փորձում էին Սովետական երկիրը հանել լենինյան ուղուց, քայքայել սոցիալիստական Հայրենիքի ժողովուրդների միասնությունն ու բարեկամությունը, ՍՍՌՄ-ում վերականգնել կապիտալիզմը։

Սովետական իշխանության պայմաններում հին, բուրժուական ազգե-



րի բազայի վրա ձևավորվեցին և պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո հաջողությամբ զարգանում են սոցիալիստական նոր ազգերը, որոնք հանդիսանում են իրոք համաժողովրդական ու համախմբված ազգեր, որոնք ազատ են բուրժուական ազգերին մաշող դասակարգային անհաշտելի հակասություններից։

Բանվոր դասակարգը և նրա Կոմունիստական պարտիան այն ուժն են, որը ամրապնդում է այդ ազգերի դաշինքը և ղեկավարում է նրանց։

ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակին հասնելու գործում վճռական դեր խաղաց ռուս մեծ ժողովուրդը՝ մեր բազմազգ սոցիալիստական պետության բոլոր իրավահավասար ազգերի մեջ առաջատար ազգը։

Սովետական հասարակական կարգը ուկրաինական ժողովրդի առջև բացեց նրա պետականության, էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման ուղին։

Կոմունիստական պարտիան բարձրացրեց այն դրոշը, որի ներքո սկսվեց ուկրաինական ժողովրդի ուժերի ծաղկումը, Սովետական Ուկրաինայի ու-

ժերի ծաղկումը։ Կոմունիստական պարտիան և նրա Կենտրոնական Կոմիտեն, ՍՍՌՄ կառավարությունը մըշտական և անդուլ հոգատարություն են ցուցաբերել ու ցուցաբերում Սովետական Ուկրաինայի ժողովրդական տընտեսության զարգացման նկատմամբ։

18. Իրագործելով սոցիալիստական ինդուստրացման քաղաքականությունը, սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պատմական կարճ ժամկետում ստեղծեց սոցիալիստական առաջավոր հզոր արդյունաբերություն, որը հանդիսացավ սոցիալիստական հիմունքներով ամբողջ ժողովրդական տնտեսության վերակառուցման վճռական պայմանը։

Ռուս ժողովրդի հսկայական եղբայրական օգնությամբ բոլոր ազգային ռեսպուբլիկաներում ստեղծվեց բարձր-զարգացած արդյունաբերություն, որը հնարավորություն տվեց վերացնելու նրանց տնտեսական դարավոր հետամնացությունը։ Ուկրաինայում ստեղծվեցին և ժամանակակից առաջավոր տեխնիկայով հագեցվեցին



գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը, տրակտորային, քիմիական և արդյունաբերության այլ կարևորագույն ճյուղեր։ Կառուցվեցին արդյունաբերական այնպիսի հսկաներ, ինչպես Խարկովի տրակտորային գործարանը, Կրամատորսկի ծանր մեքենաշինության գործարանը, «Ազովստալ», «Զապորոժստալ» մետալուրգիական կոմբինատները, Զապորոժյեի կոմբայնների գործարանը, Գորլովկայի քիմիական գործարանը, կառուցվեց Եվրոպայում խոշորագույն՝ Վ. Ի. Լենինի անվան Դնեպրյան հիդրոէլեկտրակայանը. ամբողջովին վերակառուցված են Դոնեցի ածխային և Կրիվոյ Ռոգի երկաթահանքի ավազանները։

Այդ տարիների ընթացքում անճանաչելիորեն փոխվել ու ծաղկել են արդյունաբերական այնպիսի խոշոր քաղաքները, ինչպես Կիևը, Խարկովը, Ստալինոն, Վորոշիլովգրադը և այլն։

Ուկրաինայի սոցիալիստական ինդուստրացման հաջողությունը ապահովվեց բանվոր դասակարգի աշխատանքային վերելքի շնորհիվ, որը ծա-

վալեց սոցիալիստական մրցումը, ՌՍՖՍՌ և մյուս սովետական ռեսպուբլիկաների օգնության շնորհիվ։

Սոցիալիստական ինդուստրացման հաջողությունները պայմաններ նախապատրաստեցին գյուղատնտեսության վերակառուցում անցկացնելու համար։ Պարտիայի և կառավարության հոգատարության շնորհիվ մեր երկրում ստեղծված է աշխարհում ամենախոշոր ու մեքենայացված գյուղատնտեսությունը, որը ապացուցեց ոչ միայն մանր-ապրանքային գյուղացիական տնտեսության հանդեպ, այլև կապիտալիստական գյուղատնտեսական խոշոր արտադրության հանդեպ ունեցած վճռական առավելությունները։

Սովետական Ուկրաինան մյուս սովետական ռեսպուբլիկաների հետ միասին դարձավ առաջավոր սոցիալիստական հողագործության ռեսպուբլիկա, Սովետական Միության խոշորագույն շտեմարաններից մեկը։

Կոմունիստական պարտիայի կողմից լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հետևողական կի-



րառումը ապահովեց կուլտուրական ռևոլյուցիայի հաղթանակը մեր երկրում և ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների սոցիալիստական կուլտուրայի բուռն վերելքը։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ստեղծեցին սովետական նոր ինտելիգենցիայի բազմաթիվ ազգային կադրեր, ինտելիգենցիա, որը դուրս է եկել ժողովրդի ծոցից, կապված է ժողովրդի հետ, իր բոլոր ուժերը նվիրաբերում է ժողովրդին ծառայելու, կոմունիզմի կառուցման մեծ գործին ծառայելու նպատակին։

Սովետական իշխանության շնորհիվ ուկրաինական ազգային կուլտուրան ստացավ մինչև այժմ չտեսնված հնարավորություններ իր զարգացման համար, դարձավ իսկական ժողովրդական, սոցիալիստական կուլտուրա։

19. Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ուժի ու հզորության աճը հնարավորություն տվեց կենսագործելու ուկրաինական ժողովրդի դարավոր իղձերը իր ազգային վերամիավորման մասին։ Կոմու-

*նիստական պարտիայի և Սովետական կառավարության իմաստուն քաղաքականությունը հնարավորություն տվեց ավարտել ուկրաինական բոլոր տերիտորիաների միավորումը։ 1939 թ. տեղի ունեցավ Արևմտյան Ուկրաինայի վերամիավորումը Սովետական Ուկրաինայի հետ, 1940 թվականին Ուկրաինական ՍՍՌ հետ վերամիավորվեցին Բուկովինան և Իզմայիլի մարզը, իսկ 1945 թվականին՝ Անդրկարպատյան Ուկրաինան։ Ուկրաինական բոլոր հողերի վերամիավորումից հետո Սովետական Ուկրաինան դարձավ Եվրոպայի խոշորագույն պետություններից մեկը։ Այժմ Ուկրաինական ՍՍՌ-ն ունի 40 միլիոնից ավելի բնակչություն։*

*Մի ամբողջ շարք տնտեսական ցուցանիշներով Սովետական Ուկրաինան շատ ավելի առաջ է անցել Եվրոպայի կապիտալիստական այնպիսի խոշոր երկրներից, ինչպես Ֆրանսիան, Իտալիան և այլն։ Ուկրաինայի մայրաքաղաք Կիևը՝ Ռուսիայի հնագույն քաղաքը, հանդիսանում է մեր Հայրենիքի խոշորագույն վարչական ու կուլտուրական կենտրոններից մեկը։*



*Վերամիավորված ուկրաինական մարզերում հաջողությամբ զարգանում է՝ սոցիալիստական արդյունաբերությունը, ավարտված է համատարած կոլեկտիվացումը, լայնորեն ծավալված է կուլտուրական շինարարությունը։ Սովետական իշխանության տարիների ընթացքում փոխվել է ուկրաինական հնագույն Լվով քաղաքի տեսքը. այնտեղ կառուցվել են արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ, բացվել են 12 բուհ, Ուկրաինական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի ֆիլիալը, Վ. Ի. Լենինի թանգարանի ֆիլիալը և գիտական ու կուլտուրական ուրիշ շատ հիմնարկներ։ Արևմտյան մարզերում սոցիալիստական վերափոխման ընթացքում խորտակիչ հարված հասցվեց ուկրաինական բուրժուական նացիոնալիստների՝ ուկրաինական ժողովրդի ամենաոխերիմ թշնամիների մնացորդներին, որոնք դարձել էին օտարերկրյա բուրժուազիայի ծախու գործակալները։*

*Միասնական Ուկրաինական Սովետական պետության մեջ ուկրաինական ժողովրդի վերամիավորման պատմա-*

կան պրոցեսի ավարտումը հանդիսացավ Կոմունիստական պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության՝ ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրության ու համագործակցության քաղաքականության աչքի ընկնող հաղթանակը։

20. Սոցիալիստական կարգի և սովետական բազմազգ պետության կենսականության և ուժի լուրջ ստուգումը հանդիսացավ Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմը։

Սովետական Միության բոլոր ժողովուրդները պարտիայի կոչով միահամուռ կերպով ոտքի կանգնեցին պաշտպանելու իրենց Հայրենիքը, գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ ուղղված Հայրենական պատերազմը դիտելով որպես բոլոր ազգությունների աշխատավորների ընդհանուր գործ։

Ուկրաինան վերաբերում է Սովետական Միության այն շրջաններին, որոնք մյուսներից ավելի շատ տուժեցին գերմանական ֆաշիզմի արշավանքի տարիներին։ Գերմանա-ֆաշիստական զավթիչները ավելի քան 285 միլիարդ ռուբլու գումարի վնաս պատ-



ճառեցին Ուկրաինայի ժողովրդական տնտեսությանը։ Ամենադաժան տեռորի օգնությամբ գերմանա-ֆաշիստական ճիվաղները ուզում էին հնազանդեցնել ուկրաինական ժողովրդին, նրան դարձնել «տերերի գերմանա-ֆաշիստական ռասայի» ստրուկներ։ Որպես գերմանական ֆաշիստների ակտիվ գործակիցներ էին հանդես գալիս ուկրաինական բուրժուական նացիոնալիստները։

Միայն ռուս մեծ ժողովրդի և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների եղբայրական օգնության շնորհիվ Ուկրաինան ազատագրվեց ֆաշիստական լծից։

Ուկրաինական ժողովուրդը Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում ՍՍՌՄ մյուս ժողովուրդների հետ միասին գերմանա-ֆաշիստական զավթիչների ու նրանց վարձկանների դեմ անձնվիրաբար պայքարեց ինչպես ռազմաճակատում, այնպես էլ թշնամու կողմից օկուպացված տերիտորիայում, որտեղ ծավալվեց մասսայական պարտիզանական շարժում, որը առաջ քաշեց բազմաթիվ հերոսներ։ Ընդհատակի դժվարին ու բարդ պայմաննե-

րում իրենց գործունեությունն էին ծավալում պարտիական և կոմերիտական կազմակերպությունները։

Հայրենական պատերազմի ընթացքում դաժան փորձություններին դիմացավ և է՛լ ավելի կոփվեց սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությունը։

Երկրորդ համաշխարհային պատերազմում գերմանական ֆաշիզմի ու յապոնական իմպերիալիզմի ջախջախման շնորհիվ կազմվեցին ժողովրդադեմոկրատական պետություններ, աճեց և ամրապնդվեց խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի լագերը, որին գլխավորում է Սովետական Միությունը։ Ուկրաինական ՍՍՌ-ն, հանդիսանալով Միավորված Ազգերի Կազմակերպության հիմնադիրներից մեկը, որտեղ նա Բելոռուսական ՍՍՌ-ի և ամբողջ Սովետական Միության, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների ներկայացուցիչների հետ համատեղ հետևողականորեն պաշտպանում է խաղաղության գործը, պայքարում բոլոր երկրների ժողովուրդների համագործակցությունն ամ-



րապնդելու համար։ Սովետական Ուկրաինան շարունակ ամրապնդում է եղբայրական կապերը ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ։ Լեհաստանում ժողովրդական դեմոկրատիայի կարգի հաստատումից և բուրժուազիայի ու շլյախտայի լիկվիդացումից հետո, որոնք լեհական աշխատավորներին գրգռում էին իրենց սլավոն եղբայրների՝ ռուսների, ուկրաինացիների ու բելոռուսների դեմ, առեղծվեցին և հաջողությամբ զարգանում են իսկական բարեկամական հարաբերությունները լեհ ժողովրդի և ուկրաինական, բելոռուսական, ռուս և մեծ Սովետական Միության մյուս ժողովուրդների միջև։

21. Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո Սովետական Միության ժողովուրդները, որոնց ոգեշնչում և կազմակերպում է Կոմունիստական պարտիան, չտեսնրված կարճ ժամկետում վերականգնեցին ավերված ժողովրդական տնտեսությունը և առաջ մղեցին սովետական էկոնոմիկայի, տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր ճյուղերը։

Սովետական Ուկրաինայի աշխատավորները Ուկրաինայի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և Ուկրաինական ՍՍՌ կառավարության ղեկավարությամբ, հենվելով ռուս և մեր երկրի մյուս ժողովուրդների եղբայրական օգնության վրա, լրիվ վերականգնեցին ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը, շատ բանով գերազանցեցին մինչպատերազմյան մակարդակը և այսօր իրենց նշանակալից ավանդն են մուծում կոմունիզմի կառուցման գործում։

Ուկրաինայի խոշոր արդյունաբերությունը 1952 թվականին թողարկեց 17 անգամ ավելի շատ արտադրանք, քան մինչռևոլյուցիոն Ուկրաինայի արդյունաբերությունը։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը այդ ժամանակամիջոցում ավելացավ ավելի քան 37 անգամ, մետաղամշակման արդյունաբերության արտադրանքն աճեց գրեթե 69 անգամ, ածխի հանույթը աճեց ավելի քան 4 անգամ, չուգունի ձուլումը՝ 4,5 անգամ, պողպատինը՝ գրեթե 5 անգամ։

Սովետական Ուկրաինան մեր երկրի



ածխա-մետալուրգիական կարևորագույն բազան է։ Դոնբասը իր քարածխային հզոր արդյունաբերությամբ, մետալուրգիական, քիմիական և մեքենաշինական ինդուստրիայով, ինչպես նաև Ուկրաինայի արդյունաբերական մյուս կենտրոնները կարևոր տեղ են գրավում ամբողջ Սովետական Միության արդյունաբերության մեջ։

Կենսագործելով պարտիայի և կառավարության որոշումները, Ուկրաինայի, ինչպես և ամբողջ երկրի աշխատավորները, սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը կազմող ծանր արդյունաբերության զարգացման ասպարեզում ձեռք բերած հաջողությունների հիման վրա հասնում են ժողովրդական սպառման առարկաների արտադրության շեշտակի վերելքի։

Ուկրաինայի կոլտնտեսային գյուղացիությունը իր անձնվեր աշխատանքով հասել է աշնանացան ցորենի, շաքարի ճակնդեղի և մյուս կարևորագույն գյուղատնտեսական կուլտուրաների՝ առաջներում չտեսնված բերքի։ Ուկրաինական կոլտնտեսային գյուղացիության շարքերից դուրս են եկել գյու-

ղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերում աշխատանքի սոցիալիստական մեթոդների շատ նորարարներ։

Պարտիան և կառավարությունը անդուլ հոգատարություն են ցուցաբերում սոցիալիստական գյուղատնտեսությունը ժամանակակից տեխնիկայով հագեցնելու նկատմամբ։ Ներկայումս Ուկրաինայի դաշտերում աշխատում են 182 հազար տրակտորներ (փոխադրած 15-ուժանոցի), կամ 69 տոկոսով ավելի, քան պատերազմից առաջ, 51 հազար հացահատիկային կոմբայն, կամ 65 տոկոսով ավելի, քան պատերազմից առաջ և տասնյակ հազարավոր բարդ գյուղատնտեսական մեքենաներ։

Ժողովրդական տնտեսության անընդհատ վերելքի հիման վրա աճում է աշխատավորների լայն մասսաների նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը։ Ծաղկում է ուկրաինական սոցիալիստական կուլտուրան։ Ուկրաինայում գործում են մոտավորապես 30 հազար դպրոցներ, որոնցում սովորում են ավելի քան 6,5 միլիոն երեխաներ։ 1952—53 թ. թ.



ռեսպուբլիկայում կար 144 բուհ, որոնցում սովորում էին ավելի քան 177 հազար ուսանող, որը գրեթե 8 անգամ ավելի է, քան 1914 թվականին և ավելի, քան Արևմտյան Եվրոպայի ամեն մի կապիտալիստական երկրում. 591 տեխնիկումներում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում էին մոտավորապես 234 հազար մարդ։ Ուկրաինայում գործում են տասնյակ հազարավոր կուլտուր-լուսավորական հիմնարկներ՝ ակումբներ, գրադարաններ, կուլտուրայի պալատներ։

Սովետական իշխանության տարիներին Ուկրաինայում ստեղծված՝ Գիտությունների ակադեմիան, Ճարտարապետության ակադեմիան և գիտահետազոտական հիմնարկների բազմաքանակ ցանցը միավորում են Ուկրաինայի մեծ թվով գիտնականների, որոնք իրենց արժանի ավանդն են մտցնում առաջավոր սովետական գիտության զարգացման գործում։

Ուկրաինական ժողովրդի սոցիալիստական կուլտուրայի զարգացումը տեղի է ունենում մարքսիստական-

լենինյան իդեոլոգիայի գրանիտե հիմքի վրա, ՍՍՌՄ բոլոր եղբայրական ժողովուրդների կուլտուրայի հետ ստեղծագործական անխզելի կապի և օրգանական փոխգործողության մեջ։ Ուկրաինական սովետական կուլտուրայի զարգացման վրա հատկապես բարերար ազդեցություն է գործում ռուս մեծ ժողովրդի սոցիալիստական կուլտուրան։

Սովետական Միության և նրա բաղկացուցիչ մասի՝ Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի համաշխարհային-պատմական հաջողությունները առաջ են բերում ամբողջ պրոգրեսիվ մարդկության խոր հիացմունքի և ճանաչման զգացում։

Կապիտալիստական երկրների միլիոնավոր աշխատավորներ, որոնք տնքում են դաժան շահագործման լծի տակ, մեծ հպարտության և հույսի զգացումով են հետևում կոմունիզմի կառուցման համար, ամբողջ աշխարհի խաղաղության համար ՍՍՌՄ ժողովուրդների, այդ թվում ուկրաինական ժողովրդի պայքարի հաջողություններին։



ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության հաջողությունները ամբողջ աշխարհի ժողովուրդներին ցույց են տալիս, որ միայն սոցիալիզմն է ապահովում բոլոր ժողովուրդների և ազգերի ազատ ու երջանիկ կյանքը, նրանց զարգացումն ու ծաղկումը, ժողովուրդների իսկական բարեկամությունը, նրանց համագործակցությունն ու փոխադարձ օգնությունը։

Սովետական Միությունը իրենից ներկայացնում է այն երկրի ոգեշնչող օրինակը, որտեղ մարդկության պատմության մեջ առաջին անգամ լուծված է ազգային հարցը։



Պատմական նշանակալից տարեթիվը՝ Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերամիավորման 300-ամյակը, Սովետական Միության բոլոր ժողովուրդները դիմավորում են կոմունիզմի կառուցման նոր, աչքի ընկնող հաջողություններով։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական մարդիկ հերոսաբար պայքարում են կոմունիզմի

ուղիով մեր երկրի հետագա զարգացման՝ ՍՄԿՊ 19-րդ համագումարի նշած ծրագիրն իրականացնելու համար։ Պարտիան և կառավարությունը բոլոր ջանքերը գործադրում են, որպեսզի լրիվ չափով բավարարեն աշխատավորների նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքները։

ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը նշեց սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման և աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման մարտական ծրագիրը։ Կոմունիստական պարտիան պայքար է ծավալել գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար, թեթև և սննդի արդյունաբերության արագ զարգացման համար, այն հաշվով, որ մոտակա 2—3 տարում լիուլի բավարարվեն մեր երկրի բնակչության աճող պահանջմունքները պարենամթերքի ասպարեզում և հումքով ապահովվի թեթև ու սննդի արդյունաբերությունը։

Մեր պարտիայի և Սովետական կառավարության ամբողջ գործունեությունը ներթափանցված է խորին հա-



վատով դեպի ժողովուրդը, դեպի բանվորների և գյուղացիների ստեղծագործական ուժերը, որոնք ստեղծում են կյանքի բոլոր բարիքները և հանդիսանում պատմության իսկական կերտողները։

Սովետական սոցիալիստական պետությունը կոմունիզմի կառուցման գլխավոր գործիքն է։ Կոմունիստական պարտիան անդուլ կերպով հոգ է տանում Սովետական պետության, նրա հզորության ու պաշտպանունակության հետագա ամրապնդման, բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության և սոցիալիստական համագործակցության ամրապնդման մասին։

Մեր սրբազան պարտականությունն է ապահովել Սովետական երկրի ժողովուրդների միասնության և բարեկամության հետագա ամրապնդումը, սովետական բազմազգ պետության ամրապնդումը։ Մեր երկրի ժողովուրդների բարեկամության պայմաններում մեզ համար սարսափելի չեն ո՛չ ներքին, ո՛չ էլ արտաքին թշնամիները։

*Ձախողում են կրել և այսուհետև էլ ձախողում կկրեն Արևմուտքի իմպերիալիստների բոլոր խարդախ փորձերը, որոնց նպատակն է թշնամանք սերմանել ՍՍՌՄ ժողովուրդների միջև, քայքայել մեր բազմազգ սոցիալիստական պետության հզորությունը։ Բայց սովետական մարդիկ գիտեն, որ քանի դեռ գոյություն ունի կապիտալիստական շրջապատումը, իմպերիալիստական պետությունները հետագայում էլ մեզ մոտ կուղարկեն լրտեսներ, դիվերսանտներ, կփորձեն հակասովետական նպատակներով օգտագործել թշնամական ջախջախված խմբավորումների մնացորդների, ակտիվացնել բուրժուա-նացիոնալիստական տարրերին, առանձին մարդկանց գիտակցության մեջ աշխուժացնել նացիոնալիստական նախապաշարմունքները և դրանք օգտագործել ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը քայքայելու համար։*

*Իմպերիալիստական գիշատիչների ու նրանց գործակալների՝ ամեն գույնի բուրժուական նացիոնալիստների և այլ դավաճանների մեքենայություն-*



*ների դեմ զգոնության ուժեղացումը՝ սովետական սոցիալիստական ռեսպուբլիկաների և մեր ամբողջ մեծ Հայրենիքի հաջողությունների ու բարգավաճման կարևորագույն պայմաններից մեկն է։*

*ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության հաջողությունները, ժողովուրդների բարեկամության իդեոլոգիայի հաղթանակը ամբողջ աշխարհի ժողովուրդներին պայքարի են ոգեշնչում կապիտալի ճնշումից իրենց ազատագրության համար և բոլոր ժողովուրդների միջև բարեկամական, խաղաղասիրական հարաբերությունների համար։*

*Թող կեցցե՛ և ամրապնդվի՛ ՍՍՌՄ ժողովուրդների անխորտակելի բարեկամությունը՝ մեր Մեծ Հայրենիքի ուժի և հզորության աղբյուրը։*

*Մարքսի — Էնգելսի — Լենինի — Ստալինի դրոշով, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ առա՛ջ, դեպի կոմունիզմի հաղթանակը։*

---

**Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**



